# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 7 ՖՐԷԶՆՕ, ՔԱԼ. ՅՈՒԼԻՍ, 1918 ՏԱՍԸ ՍԷՆԹ


## ՈՒՐ ԿԵՐԹԱՆ

Ո՞ւր կ'երթան չորս տարիներէ ի վեր թերթերուն մէջ գրուած, բեմերէն խօսուած, ժողովներու մէջ յայտարարուած այն կարգ մը թելադրութիւնները, պատուէրները, որոնք կ'ուղղուէին ժողովուրդներուն՝ պատերազմին առաջ բերած կեանքի արտասովոր երեւոյթներուն կարենալ դիմադրաւելու համար. երեւոյթներ՝ որոնց կարելի է յաղթել միայն և մի միայն արտասովոր փոփոխութիւն առաջ բերելով կեանքի բոլոր հանգամանքներուն մէջ. հանգամանքներ՝ որոնց մէջ կը բավանդակի անհատականը ընկերականը և ընտանեկանը։

Ամերիկեան իմաստուն Հանրապետութիւնը, իր պատերազմի մասնակցած օրէն իսկ, ի ձայն փողոյ և թմբկի կը յայտարարէ շարունակ, Միացեալ Նահանգաց բոլոր կէտերուն վրայ, իբր Յովնան մը ի Նինուէ, որպէս զի ժողովուրդը լսէ իր յորդորներուն ու թելադրութիւններուն, զգալ տայ օրուան կացութեան ծանրութիւնը, որպէս զի հասկցնէ թէ այդ թելադրութեանց անսալը և զանոնք կատարելը աւագ կարեւորութիւն ունին և յաղթութիւնը շահելու պայմանները կը յօրինեն։ Ո՞ւր կ'երթան բոլոր այս մասնակի և կառավարական ցուցմունքներն ու պատգամները։ Միամոլները, ըմպելատէրները, բաղդախաղի ջերմեռանդները ի՞նչ պակսեցուցին իրենց այդ բացարձակապէս աւելորդ ծախքերէն։ Ո՞ւր կ'երթան պատերազմէն ծնունդ առնող այդ ամենօրեայ քարոզները Իգական սեռի նորաձեւութիւնները, կանացի արդուզարդի համար այս երկրին մէջ եղած մրցումը Եւրոպան գլած անցած էր պատերազմէն առաջ։ Հիմակ որ պատերազմը իր հինգերորդ տարին պիտի թեւակոխէ, յընթացս որոյ միլիոնաւոր երիտասարդներու արիւնը կը հոսի ուղխօրէն ի պաշտպանութիւն անիրաւուած մեծ ու փոքր ցեղերու, նոյնպէս Թուրքէն ու Գերմանէն բռնաբլկուած հարիւր հազարաւոր անմեղ կոյսերու և բարի մայրերու վրէժը սրբագործելու գերագոյն պարտականութիւնը կատարելու համար։ Ո՛վ դու Հայ աղջիկ, Հայ մայր, վայրկեան մը իսկ միտքէդ մի հեռացներ որ քեզի նման հազարաւորներ այսօր թրքական պիղծ հարէմներու մէջ բանտարկուած, գերի են դարձած անոնց վայրագ ու քստմնելի ունակութիւններուն։ Ինծի համար անոնց այդ վիճակը պարզապէս խենդեցնող է. դուն ի՞նչ կըզգաս։ Հապա հեռաւոր անապատները քըշուածնե՞րը, ճանապարհին խոշտանգուածնե՞րը, վիժածնե՞րը . . . ։ Ո՞ւր կ'երթան ձեզի ուղղուած զգուշացնող խօսքերը որոնք կը լսուին Եկեղեցւոյ և աշխարհիկ բեմերէն, հանապազօր կը կարդացուին թերթերուն մէջ։ Ոչ միայն չի լսեցինք թէ Հայ տիկին մը կամ օրիորդ մը, հանգանակութեան ժողովի մը մէջ կամ առթիւ մը յարմար, հանէր իր վրայէն իր մէկ թանկագին տարազ և նետէր սեղանին վրայ ըսելով, «Ծախեցէք սարկայ ու արժէքը խրկեցէք ՀՈՆ, ԱՆՈՆՑ», այլ անոնցմէ գնումներ կըլլան տակաւին, և պերճանքն ու ցուցամոլութիւնը ձեռք ձեռքի տուած նախճիրներ կը գործեն տակաւին մեր մէջ։ Ո՞ւր կ'երթան կառավարական և ազգային բոլոր լուրջ ու անհրաժեշտ զեկուցումները, երբ տակաւին իգական սեռը իր պերճանքէն չի կրնար հրաժարիլ, երբ մարդիկ իրենց մոլի սովորութեանց կառչած կը մնան։ Բաւական չէ միայն քանի մը տոլարով հանգանակութեանց մասնակցիլ. Օ՛, ո՛չ. բաւական չէ միայն միլիոն մը կամ աւելին գոյացնել. կրնա՞ս հա-

ձոյլէր, մոլութիւններէդ հրաժարիլ ու ինքզինքըդ ենթարկել համազգային մեծ ցաւին, ահաւոր սուգին: Ասիկայ ալ այնչափ կարեւոր է որչափ միլիոններ Հայթայթել անշքացած Հայրենիքիդ ու Թշուառացած ցեղիդ համար: Երբեմն Նինուէի քաղաքներուն մէջ շրջող Յովնանի պատգամն է որ ալ աւելի բուռն ու ուժգին կերպով կ'որոտայ, շրջան կ'ընէ այսօր ոչ թէ քաղաքի մը մէջ, այլ ամբողջ աշխարհի վրայ, որուն շատ մը մասերը կործանեցան արդէն: Քու սրտիդ թափանցա՞ծ է կործանումի այդ ահեղ ձայնը. ի՞նչ կ'ըդգաս. խաւարչտին դարերու մէջ ապրող հեթանոս Նինուէցիին չա՞փ ալ իմաստութիւն չունիս որ ժիր ու մշտարթուն հսկես և չի թողուս որ կործանի այս գեղեցիկ աշխարհը, ինչպէս որ չի կործանեցաւ Նինուէն: Օ՛ն, ուրեմն, ի գործ. երկար ճառի, քարոզի ու նուագի մի սպասեր. հինգ բառերէ բաղկացած Յովնանի ազդարարութիւնը խոշոր Նինուէն փրկեց: Միտքդ իմաստնացուր օրւան կենսական կացութիւնովը. քակէ լայն բաց հասարակաց և մանաւանդ քու ցեղիդ դժբաղդ մնացորդներուն պատառ մը չոր հաց և քիչ մը հանդերձանք հասցնելու համար: Հապա սի՞րտդ. ո՛հ, զայն բաց դուն Ամենակալին առջև, աղօթէ միշտ և մի յուսահատիր. շնորհակալ եղիր որ պատեհութիւն ունիս ոտնակոխուած Ազատութիւնը և Արդարութիւնը պաշտպանելու:

Ներկայ աշխարհքը հրաշքի մը պէտք ունի, և Աստուած իր հրաշքները մարդոց ձեռքով գործած է միշտ. ջանա որ այդ հրաշքի միջնորդներէն մին դուն ըլլաս:



## ՔԱԼԻՖՈՐՆԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ

(Շարունակութիւն անցեալ թուէն և վերջ)

Զ.—Քալիֆորնիոյ Հայ գաղութին մեծագոյն մասը ինչպէս ըսինք հողատէր դարձած է կամ այգետէր ըստ կարի: Բայց պէտք չէ կարծել որ այգետէր Հայեր քաղաքի կամ գիւղի մէջ համախմբեալ բնակութիւն մը ունին, ո՛չ: Առ հասարակ ամեն այգետէր իր տունը շինած է իր այգիին մէջ. այնպէս՝ կէս մղոնէն մինչև քսան և աւելի մղոններ հեռու են իրարմէ Հայ տուներ: Ֆրէզնոյէն դուրս բոլոր գաղութներ այսպէս ցրուած են Սան Ուօքին հովիտին մէջ: Ֆրէզնոյի անմիջական շրջակայքը կըսուի Կոլոնի (գաղութ կամ գաղթավայր) ցրուեալ այլ և այլ հեռաւորութեամբ: Ֆաուլըր, Եդեմ, Սէլմա, են. այսպէս ցրուած են, և այս ցրուեալ վիճակը կը դժուարացնէ Հայ այգեգործներուն հոգեւոր և ազգային ու և այլ խընամքը, և կը պահանջէ իմաստուն և հնարաւոր կարգադրութիւններ:

Արդ առանձին առաջնորդութիւնը պիտի տեսնէ այս վիճակը տեղւոյն վրայ և հոգ պիտի տանի ընել ինչ որ կարելի է այս ցրուեալ Հայութիւնը պահպանելու համար: —

Այս և այսպիսի խորհուրդներ միշտ աչքի առջեւ են, և հետզհետէ կը շեշտուի ասոնց կարեւորութիւնը, և անհրաժեշտ կը դառնէ առանձին առաջնորդութեան մը հաստատութիւնը Քալիֆորնիոյ մէջ: Անցեալ տարի Ֆրէզնոյի Հայ գաղութը շարժեցաւ այս նպատակով, հանրագրութիւններ պատրաստեց, մամլոյ միջոցաւ յուզեց խընդիրը և կոչ ըրաւ ժողովուրդին, վերջապէս նկատի առաւ իրաց վիճակը 1916 Նոյեմբեր 19, Կիրակի կէսօրէ ետքը, իր նիստին մէջ, վաթսուն երկու անդամներու ներկայութեամբ: Հանրագրութիւնք կարդացուեցան, խորհրդածութիւններ եղան և որոշուեցաւ, որ Քալիֆորնիոյ միւս Հայ գաղութներուն ալ ներկայացուի առանձին առաջնորդութիւն մը ունենալու խնդիրը, որպէս զի եթէ անոնք ալ հաւանին և համաձայնին, պատգամաւորական ժողով մը կազմուի բոլոր Հայ գաղութներու ներկայացուցիչներէն՝ խնդիրը ներկայացնելու համար Ձեր Վեհափառութեան: —

Քալիֆորնիոյ միւս հայ գաղութներուն հետ բանակցելու պաշտօնը յանձնուեցաւ ընդհանուր ժողովոյ դիւանին և Ֆրէզնոյի Մայր Եկեղեցւոյ Հոգաբարձութեան:

Այս մարմինը խնդիրը պաշտօնապէս գրեց Ֆաուլըրի, Եդեմի, Լօս Անճէլըսի Հոգաբարձութեանց, պարզեց առանձին առաջնորդութիւն մը ունենալու խնդիրը, և յայտարարեց, որ եթէ հաւանին ու համաձայնին, պաշտօնապէս յայտնեն, և պատրաստ ըլլան պատգամաւորներ ընտրելու՝ պատգամաւորական ժողով կազմելու համար:

Յիշեալ եկեղեցիներու ընդհանուր ժողովներու կողմէն պաշտօնապէս յայտարարուեցաւ, թէ իրենք ևս հաճ ու հաւան են առանձին առաջնորդութիւն մը ունենալու ձեռնարկին, և պատրաստ են իրենց ինկած նիւթական ու բարոյական աջակցութիւնը նուիրել ամենայն յօժարութեամբ:

Ֆրէզնոյի ընդհանուր ժողովը 1917 Յունվար 14 Կիրակի կէսօրէն ետքը, իր նիստին մէջ նկատի առաւ այդ պաշտօնական պատասխանները, ու տեսնելով որ Քալիֆորնիոյ մէջ Հայաստանեայց Եկեղեցւոյ զաւակները կը փափաքին ունենալ իրենց առանձին առաջնորդարանը, որոնց կազմել



պատգամաւորական ժողովը, որպէս զի խնդիրը, նախորդ ժողովին մէջ առնուած որոշման համաձայն, ներկայացնէ Ձեր Վեհափառութեան: Իսկ Պատգամաւորական ժողովին մասնակցելու համար հինգ պատգամաւորներ ընտրեց իր մէջէն և որոշեց գրել Ֆաւլըր, Եդեմ և Լօս Անճէլըս, որ առայժմ երեքական պատգամաւորներ ղրկեն:

Ահա այս որոշման համաձայն, մենք ստորագրեալքս որ կը ներկայացնենք Ֆրէզնոյի, Ֆաւլըրի Եդեմի և Լօս Անճէլըսի Եկեղեցիները ու ժողովուրդը, ժողովուեցանք Ֆրէզնոյի Մայր Եկեղեցւոյ խորհրդարանը, ներկայութեամբ մեր հոգևոր հովիւներուն և ստորագրեցինք ու վաւերացուցինք փոխադարձաբար մեր եկեղեցիներու ընդհանուր ժողովներու կողմէն մեզի տրուած լիազօր ներկայացուցչութեան պաշտօնագիրները և պատգամաւորներու անձնական նոյնութիւնը, և այս պաշտօնական ձևակերպութիւններէ ետքը ընտրեցինք մեր ժողովին դիւանը. Ատենապետ՝ Սրապիոն Մելքոնեան, Ատենադպիր՝ Մկրտիչ Եօլլիկեան, կազմեցինք մեր ժողովին օրակարգը և ձեռնարկեցինք գործի: Եւ ուսումնասիրելէ ետքը պատգամաւորական ժողովին յանձնուած և վստահուած խնդրին բոլոր պարագաները, որոշեցինք որդիական համարձակութեամբ և ակնածանքով դիմել Ձեր Վեհափառութեան, պատմելու և պարզելու իրողութիւնը Ձեր Հայրապետական գահոյից առջև, և ջերմապէս խնդրել Ձեր Ս. Օծութենէն, յանուն Քալիֆօրնիոյ և առ հասարակ բոլոր արևմտեան նահանգաց Հայ գաղութներու որ բարեհաճիք շնորհել մեզ առանձին առաջնորդութիւն մը ունենալու արտօնութիւնը, ուղղակի ընդ իրաւասութեամբ և իշխանութեամբ Ամենայն Հայոց Հայրապետութեանդ, ի սէր և ի մխիթարութիւն Մայր Աթոռոյ այս գաղթական գաւառներուն, որոնք սրտագին կը փափաքին պահել իրենց Հայութիւնն ու Հայաստանեայց Եկեղեցին:

Որոշեցինք նաև մեր այս խնդրագիրը մատուցանել յառ Ձեր Վեհափառութեան, ի ձեռն Ամերիկայի Հայոց Առաջնորդ Գեր. Տ. Արշէն Ծ. Վ. Վեհունւոյ, և խնդրել Ն. Գերապատուութենէն, որ ուշադրութիւն դարձնելով մեր ձեռնարկին կարևորութեան, գնահատէ զայն, և առանց յապաղման ապահովագրեալ ծրարով հասցնէ զայն Ձեր Վեհափառութեան ձեռքը:

Թոյլ տուէք մեզ, Վեհ. Հայրապետ, շեշտել Քալիֆօրնիոյ կամ արևմտեան նահանգաց համար առանձին առաջնորդութիւն մը հաստատելու պէտքին կարևորութիւնը, և յայտարարել, որ թերևս օր պիտի գայ, որ Մայր Աթոռը պիտի հարկադրուի բոլոր Ամերիկայի Հայ գաղութին համար աւելի ընդարձակ իրաւասութեամբ եկեղեցական իրաւասութիւն մը հաստատել քան առաջնորդականը: Բայց առ այժմ դառնալով Քալիֆօրնիայէն, կրնանք սա իրողութիւնը մատնանիշ ընել Ձեր Ս. Օծութեան, թէ ինչ ալ ըլլայ Հայաստանի կամ Կիլիկիոյ բախտը պատերազմէն ետքը, Հայերը ամեն պարագայի տակ մեծաւ մասամբ պիտի մընան Ամերիկայի մէջ: Այս իրողութիւնը մատնանիշ կրնենք և կը շեշտենք, որովհետև Մայր Աթոռը պարտի լաւ գիտնալ Ամերիկայի Հայութեան վիճակը և ըստ այնմ հսկել այս գաղութներուն վրայ:

Անշո՛ւշտ, Վեհ. Տէր, պատերազմէն ետքը, երբ աշխարհ խաղաղի, և մանաւանդ երբ բնաշխարհին մէջ Հայ ազգին համար ստեղծուի և ապահովուի քաջալերիչ կացութիւն մը, երկիր պիտի վերադառնան այն Հայեր, որ հաստատուն գործ չունին Ամերիկայի մէջ, այսինքն անոնք որ գործաւորներ են ընդհանրապէս, և անոնք Միացեալ Նահանգաց միջին և արևելեան շրջաններուն մէջ կը գտնուին առ հասարակ: Իսկ Անոնք որ դիրք չինած են, վաճառական են, հողատէր և տանուտէր են, մանաւանդ Ամերիկայի մէջ ծնած ու հասած սերունդը դժուար է, որ վերադառնան երկիր: Ասիկա շատ յայտնի է գրեթէ Քալիֆօրնիոյ համար: Եւ դարձեալ ասիկա բնական երևոյթ մըն է Հայ գաղթականութեանց պատմութեան մէջ ևս:

Կ՚արժէ նաև գիտել, որ Քալիֆօրնիոյ Հայութիւնը հետզհետէ կը տեղաւորուի, կը զօրանայ և կ՚ըստուարանայ: Հայեր ջանադիր են նոր նոր հողեր գնել և ընդարձակել իրենց կալուածները: Ուշադրաւ է նաև արևելեան նահանգներէն եկող Հայոց թիւը, որոնք կուգան հողատէր ըլլալու համար այս կողմերը:

Այս իրողութիւնը մատնանիշ ընելով, նոյն իսկ կրնանք ըսել, թէ Քալիֆօրնիոյ Հայ գաղութն է, որ օր մը իր Հայեցի կազմակերպութեամբ պիտի կրնայ պահել Ամերիկայի Հայութիւնը:

Այս կէտին վրայ խոնարհաբար կը հրաւիրենք Ձեր Հայրական խնամոտ ուշադրութիւնը, զի մի գուցէ այնպէս կարծուի թէ Ամերիկայի Հայ գաղութը առ ժամանակեայ գաղութ մըն է, և հետևաբար հարկ չկայ նոր առաջնորդութիւն մըն ալ հիմնելու:

Ընդհակառակն մենք կը հաւատանք և կը հաստատենք, որ Ամերիկայի Միացեալ Նահանգները, թէ պատերազմէն ետքը և թէ ամէն ժամանակ, ինչպէս շատ մը ազգերու և ժողովուրդներու, նոյնպէս Հայոց համար պիտի մնայ նշանաւոր գաղթավայր մը, այնպէս որ վաղը, եթէ վերադարձողներ ըլլան, անոր փոխարէն նոր նոր գաղթողներ ալ պիտի գտնուին: Հետեւաբար Ամերիկայի հին և նոր Հայութիւնը պահելու և պահպանելու համար անհրաժեշտ է առաջնորդական լաւ կազմակերպութիւն, և այս անհրաժեշտութիւնը մանաւանդ անյետաձգելի է Քալիֆօրնիոյ կամ արեւմտեան նահանգաց համար:

Վստահ ենք, Վեհափառ և Ս. Հայրապետ մեր, որ Հայրական գորովով պիտի ընդունիք մեր խնդրուածքը, և պիտի քաջալերէք Ձեր հարազատ զաւակները իրենց ձեռնարկին և ծրագրին յաջողութեան մէջ, շնորհելով արտօնութիւնը առանձին առաջնորդութեան մը հաստատութեան և օրհնելով մեզ:

Այս վստահութեամբ կը մատչինք որդիական խորին ակնածանօք ի համբոյր Օծեալ աջին և Ս. Խաչին Վեհափառութեանդ.

Ի դիմաց Քալիֆօրնիոյ Հայոց Առաջնորդութեան Պատգամաւորական Ժողովոյ

Նախագահ
ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

Հոգեւոր Հովիւ Ֆրեզնոյի
ԹԷՈԴՈՐՈՍ ՔԱՀ. ԽՍԱՀԱԿԵԱՆ

Ս. Վ. ՄԵԼՔՈՆԵԱՆ՝ Ատենապետ
ՄԿՐՏԻՉ ԽՕԼԼԻԿԵԱՆ՝ Ատենադպիր

---

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԵԱՆ

---

ԱմերիկայիՀայոց Ազգային Առաջնորդարանը տարւոյս Ապրիլ 24 Թուակիր և Համար 178 Շրջաբերականով և Հայ Մամուլի միջոցաւ, մեր եկեղեցիին բոլոր Հոգեւոր Հովիւ հայրերուն, թեմական ժողովոց և Հոգաբարձութեանց ու ժողովուրդին հաղորդեց Ամենայն Հայոց Վեհ. Հայրապետին հրահանգներն ու վարչական կարգադրութիւնները:

Նորընտիր Ազգ. Կեդրոնական Վարչութիւնս Ապրիլ 24-ի իր առաջին լիագումար նիստին մէջ լրջօրէն խորհրդակցութեան նիւթ ըրաւ Հայրապետական այդ հրահանգները: Հետեւաբար ներկայիս կուգանք ի պաշտօնէ յայտարարել թէ՝

1.—Ն. Սրբութիւն Ամենայն Հայոց Հայրապետին հրահանգները՝ ինչպէս Կեդրոնական Վարչութեանս, նոյնպէս նաև Ամերիկահայ Առաջնորդութեան բոլոր թեմերուն համար վերջնական և գերագոյն հրահանգներու ուժն ու օրինական հանգամանքն ունին:

2.—Վարչութիւնս իր պաշտօնին պարտքը կը համարի այս առաջնորդական վիճակի բոլոր գործերը վարել Ամերիկահայ Սահմանադրական Օրէնքին տրամադրութեանց և Հայաստանեայց Եկեղեցւոյ գերագոյն պետին հրահանգաց համեմատ միայն:

3.—Ն. Ս. Օծութիւնը՝ քաջատեղեակ Ամերիկահայ իր հօտին եկեղեցական խնդրոց և պայմաններուն, Տեղապահութեան տուած իր հրահանգներուն վեցերորդ հատուածին մէջ կը յայտարարէ — «ԱՇԽԱՏԻԼ ԳԱՂՈՒԹԻ ԲՈԼՈՐ ՀԱՄԱՅՆՔՆԵՐԻ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԻ ՄԷՋ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԵԱՆ ՈԳԻՆ ՄՏՑՆԵԼ, ԿԱՊԵԼՈՎ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ ՀԵՏ ԲՈԼՈՐ ՀԱՄԱՅՆՔՆԵՐԸ, ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆՆԵՐԸ, ԵԿԵՂԵՑԱԿԱՆՆԵՐԸ ԵՒ ԵԿԵՂԵՑԻՆԵՐԸ»:

Վարչութիւնս համոզուած է, որ ԻՐԱՒՈՒՆՔԻ և ՊԱՐՏՔԻ ԿԱՏԱՐՄԱՆ ճամբուն վրայ է որ սիրոյ և համերաշխ գործակցութեան կապերը կրնան ամրապնդուիլ, եթէ միայն ամէն ոք, հոգեւորական թէ աշխարհական, այս Առաջնորդական վիճակին անցեալ, ներկայ և ապագայ գործերուն և խնդրոց մէջ, ինքն իրեն համար անխախտ սկզբունքը ընտրէ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ԿԱՄՔԸ, ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՕՐԻՆԱՑ ԱՆՊԱՅՄԱՆ ՀՆԱԶԱՆԴՈՒԹԻՒՆԸ:

4.—Առաջնորդական ծանօթ խնդիրէն ի վեր տակաւին տեղ տեղ շարունակուող տարաձայնութիւնները և այս պատճառաւ յառաջացած կարգապահութեան դէմ յայտնի թերացումները, Հայրապետին վճիռէն յետոյ՝ պէտք է միանգամ ընդ միշտ վերջ գտնեն: Ժամանակ է որ Ազգ. Առաջնորդարանի շուրջ ներդաշնակ, սիրալիր ու արդիւնաւոր գործունէութիւն մը սկսի, կէտ առ կէտ գործադրելով Սահմանադրական Օրէնքը:

«.—Արդ, Կեդր. Վարչութիւնս հիմնուելով

Հայրապետի Կոչին և Հրամանին վրայ, ներկայ շրջաբերական գրով ՍԻՐՈՅ ԵՒ ՀԱՄԵՐԱՇԽ ԳՈՐԾԱԿՑՈՒԹԵԱՆ ՀՐԱՒԷՐ ԿԸ ԿԱՐԴԱՅ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՀԱՅՑ․ Ս․ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԲՈԼՈՐ ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆ ՀԱՅՐԵՐՈՒՆ, ներկայիս պաշտօնի վրայ ըլլան կամ ոչ, ինչպէս նաև ՀԱՅՑ․ ԵԿԵՂԵՑԻՈՅ ԲՈԼՈՐ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆՑ։

ԹԱԽԱՆՁԱԳԻՆ ԿԸ ԽՆԴՐԵՆՔ, ՈՐ ՎԵՐՋԱՑԱԾ ՆԿԱՏՈՒԻՆ ԱՆՑԵԱԼ ԱՄԵՆ ԽՆԴԻՐ ԵՒ ԽԸՏԻՐ։ ՓՈՒԹԱՆՔ՝ ԸՍՏ ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՕՐԻՆԱՑ, ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ՊԱՇՏՕՆԵԱՅ, ԺՈՂՈՎ ԵՒ ԹԵՄ, ԿԱՏԱՐԵԼՈՒ ՄԵՐ ՎՐԱՅ ԴՐՈՒԱԾ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ, ԲԱՐՈՅԱՊԷՍ ԵՒ ՆԻՒԹԱՊԷՍ, ԿԱՏԱՐԵԱԼ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԵԱՄԲ ԵՒ ՄԻՇՏ ՓՈԽԱԴԱՐՁ ՍԻՐՈՎ ԵՒ ՅԱՐԳԱՆՔՈՎ։

6․—Հայաստանեայց Եկեղեցին, իր կազմութեան առաջին շրջանէն սկսեալ, լինելով ԺՈՂՈՎՐԴԱՊԵՏԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐՈՒ ՎՐԱՅ ՀԻՄՆՈՒԱԾ ՀՈԳԵՒՈՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ՄԸ ԱԶԳԻՆ ՄԷՋ, մանաւանդ ներկայ շրջանին պէտք ունի, իր զաւակներէն ամէն մէկ անհատին օժանդակութեան։

Թող Ամերիկահայ ամէն թեմ և Հայց․ Եկեղեցիի ամէն մէկ զաւակ իր սիրոյն, ծառայութեան ոգւոյն, ինչպէս նաև օրինապահութեան գրական ապացոյցները ի յայտ բերէ․ կատարէ իր պարտքը և տիրանայ իր Սահմանադրական իրաւունքներուն։ ՈՒՂՂԱԿԻ ԵՒ ԱՆՎԵՐԱՊԱՀՕՐԷՆ ընէ իր օգտակար թելադրութիւնները Ազգային Առաջնորդարանին, վստահ ըլլալով, որ ամէն պարտաճանաչ թեմի, պաշտօնէի և ժողովուրդի սահմանադրական օրինաց և Հայրապետական հրահանգաց համապատասխանող բոլոր օգտակար խորհուրդները, թելադրութիւնները, խնդիրներն ու պահանջները ամենայն սիրով ու ուրախութեամբ պիտի նկատի առնուին։ Եւ եթէ ներկայանան խնդիրներ, որոնց լուծումը Տեղապահին կամ Կեդր․ Վարչութեանս կրկին ժողովոց ձեռնհասութենէն վեր կը մնան, անոնք պարտականութիւն պիտի նկատեն անմիջապէս այդ կարգի խնդիրները յանձնելու երեսփոխանական ժողովին և ի հարկին վեհափառ Հայրապետին ուշադրութեան և վճռին։

7․—Կեդր․ Վարչութիւնս իր պարտականութիւնը նկատած և որոշած է նաև որ Ազգային Առաջնորդարանի վարչական գործոց և խնդրոց մասին ստոյգ և վաւերական տեղեկութիւններ հաղորդէ պարբերաբար՝ Հայ մամուլին միջոցաւ։

Որովհետև վարչութեանս անդամները կը հաւատան որ այս եղանակաւ՝ ո՛չ միայն սխալ հասկացողութեանց գլխաւոր մէկ պատճառը կը վերնայ, այլ մանաւանդ Ազգ․ Առաջնորդարանը պէտք է նկատուի և լինի իր ժողովուրդին գիտակցութեանը մօտիկ, տեսանելի և ապակիի պէս թափանցիկ ազգային կրօնական հաստատութիւն մը, որուն մէջ ոչինչ կայ գաղտնի կամ վարագուրեալ։

Հետևաբար, Վարչութիւնս Հայ մամուլի պաշտօնական ներկայացուցիչներէն կը խնդրէ նըկատի առնել Առաջնորդարանին և վարչութեանս այս յայտարարութիւնը, ի պահանջել հարկին դիմել մեզի ստոյգ տեղեկութիւններ ստանալու համար, զորս սիրով պիտի տանք, Առաջնորդարանի վերաբերեալ խնդիրներու նկատմամբ։

8․—Ի գիտութիւն Հայց․ Եկեղեցւոյն թեմական հովիւներուն, անպաշտօն եկեղեցական հայրերուն, պատ․ հոգաբարձութեանց և Հայց․ Եկեղեցւոյ բոլոր ժողովուրդին կը ծանուցուի թէ, Ազգ․ Առաջնորդարանի վերաբերեալ նամակներ պէտք է ուղղուին Առաջնորդական Տեղապահին, հետևեալ հասցէով․

**Rev. Shahe Vart. Kasparian**
65 Laurel St. Ուստըր, Մէսս.

Իսկ Հովուական և Առաջնորդական թեմերէն Առաջնորդարան ղրկուելիք դրամները պէտք է ղրկուին ուղղակի Տնտեսական ժողովի Գանձապետին հասցէով, որ է —

Պ․ Մ․ Կ․ Պէրպէրեան, 78 Ֆրընթ փողոց, Ուստր․

Ի դիմաց Ազգ․ Կեդր․ Վարչութեան
Վասն Ատենապետի ԵՂԻՇԷ ՔՀՆ․ ԳԱԼՉՆՃԵԱՆ
Ատենադպիր Ա․ Ն․ ՆԱԶԱՐԷԹԵԱՆ
Նախագահ և Առաջն․ Տեղապահ
ՇԱՀԷ ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆ
Յունիս 3, 1918, Ուստըր, Մէս․

## ՏՕՆ ՍՐԲՈՑ ԹԱՐԳՄԱՆՉԱՑ

Թադէոս և Բարթողիմէոս Առաքեալներու միջոցաւ, Հայաստանի մէջ քարոզուած Քրիստոնէութիւնը՝ Հայ կռապաշտ թագաւորներու կողմանէ դրուած արգելքներուն պատճառաւ՝ երեք հարիւր տարիի չափ գաղտնի պահուելէ վերջ․ 301 թուականին Ս․ Գրիգոր Պարթևի անձնազոհ ջանքերուն շնորհիւ Հայոց մէջ յայտնի կերպով տիրող կրօնքը դարձաւ։ Բայց Հայք չունենալով իրենց լեզուին սեփական գիր, Յունարէն և Ասորերէն գիր ու անոնց Ս․ գրքերը կը գործածէին եկեղեցւոյ մէջ։

Այս դժբաղդ պարագան արգելք եղեր Քրիստոնէութեան Հայաստանի մէջ աւելի արագ և աւելի դիւրահասկնալի կերպով տարածուելուն։

Ս. Սահակ Կաթողիկոս, Ս. Մեսրոպ վարդապետի հետ, վերջ տուին այդ ցաւալի կացութեան։ Մանաւորապէս Ս. Մեսրոպ, յետ երկար և տաժանելի աշխատութեան և Աստուածային օգնութեան, յաջողեցաւ հնարել երեսուն և վեց տառեր, որոնք ըստ ամենայնի յարմարեցան մեր լեզուին ու անմիջապէս ձեռք զարկին Ս. Գրոց թարգմանութեան, ու Ս. Գրիգորի շնորհիւ հոգւով լուսաւորուած մեր աշխարհը լուսաւորեցին նաև մտքի լոյսով 404ին։ Հայ հոգիներին վրայփայլող այս զոյգ մը արեգակները յիրաւի վեր են ամեն գովեստէ ու ամեն գրուատիքէ։ Բայց ցաւալի է որ մեր ժողովուրդէն շատեր անգիտակից կը մնան դեռ անոնց մասին։ Ինչպէ՞ս աններելի ապերախտութիւն է ասիկա։ Տարին անգամ մը Յունիս ամսոյ մէջ Եկեղեցին կը յիշատակէ զանոնք, իրենց անուան ձօնուած գմայլելի շարականներով։

Ֆրէզնոյի Ս. Երրորդութիւն Եկեղեցւոյ աջակողմեան խորանը Ս. Սահակի իսկ ձախակողմեանը Ս. Մեսրոպի անուններուն նուիրուած են։

## ՏՕՆ ԿԱԹՈՂԻԿԷ ՍՐԲՈՅ ԷՋՄԻԱԾՆԻ

Աստուածային կարգադրութեամբ և Ս. Գրիգոր Լուսաւորչի անձնազոհ ջանքերով, Հայաստանի մէջ Հայոց Եկեղեցւոյ հաստատութեան և կազմակերպութեան յիշատակութիւնն է «Տօն Կաթողիկէ»ն, որ տեղի ունեցաւ 301 թուականին։

Դէպքը հաստատող պատմական ստոյգ աւանդութիւնները այնքան ճոխ են որ կարելի չէ բոլորը միասին յառաջ բերել այս նեղ էջերուն մէջ։ Տրդատ թագաւորի հալածանքը Քրիստոնէութեան դէմ, Սուրբ Գրիգորի մահաւոր կերպով աննկարագրելի տանջանքներու ենթարկուիլը, Տրդատին դարձի գալը, Սուրբ Գրիգորի խոր վիրապէն դուրս հանուիլը, ուր հրաշքով միայն ապրած էր երկար տարիներ, տեսիլքի մը մէջ Միածնի էջք և անով եկեղեցւոյ մը շինութեան ձևին տպաւորումը Ս. Գրիգորի մտքին մէջ, Վաղարշապատի մէջ Էջմիածին անունով առաջին Քրիստոնէական տաճարի մը կառուցումը, Հայոց բոլորական դարձն ի Քրիստոնէութիւն, Հռիփսիմեանց և Գայանեանց կոյսերու նահատակութիւնը, անոնց գերեզմաններուն վրայ վկայարան մատուռներու շինութիւնը, Ս. Գրիգորի եպիսկոպոս ձեռնադրուիլը, Հայոց կաթողիկոս կարգուիլը, և այլն և այլն։ Ասոնք բոլորն ալ կը խտացնէ իր մէջ Տօն Կաթողիկէն, վասն զի,

« Էջմիածին ի հօրէ, և լոյս փառաց ընդ նմա։ Զայնք հնչեցին սանդարամետք անդնդոց։

«Տեսեալ զլոյս մեծ Հայրապետին Գրիգորի. պատմէր ցնծութեամբ հաւատացեալ արքային։

«Եկայք շինեսցուք, սուրբ զխորանն լուսոյ, քանզի ի սմա ծագեաց մեզ լոյս ի Հայաստան աշխարհի։»

Այսպիսի թանկագին ակերով ընդելուզուած խիստ շատ հարուստ էջեր ունինք մեր անման շարականին մէջ նուիրուած վերը համառօտակի յիշուած դէպքերուն։ Ոչ մի Քրիստոնեայ եկեղեցի իր երգեցողութիւններով կրնայ մրցիլ Հայկականին հետ, որուն շարականները միայն ճոխ են և հրեշտակային ըլլալու չափ բանաստեղծական ու երկնային. Թող ուրիշ բազմաթիւ տաղերն ու գանձերը, յօրինուած տարուան ամեն մէկ օրուան համար մէկէ աւելի, որոնց գոյութիւնը դժբաղդաբար այս նոր աշխարհի մեր եկեղեցիներուն մէջ վտանգի տակ է ակներև։

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԼՈՒՐԵՐ

### Հայ Ընթացաւարտներուն ի պատիւ

Ամերիկեան դպրոցներէն Հայ երկսեռ ընթացաւարտներուն ի պատիւ հաւաքոյթ մը տեղի ունեցաւ Յունիս 23ին, Հայ դպրոցի սրահին մէջ։ Խրախուսականներ խօսուեցան ու դաշնակի ընկերակցութեամբ երգեր երգուեցան, ապա բոլորին միրգ ու պաղպաղակ բաշխեց Եկեղեցւոյս Հոգաբարձութիւնը։

### Կիրակնօրեայ Դպրոց

Յունիս 2 ին, դպրոցի սրահին մէջ հաճելի հաւաքոյթ մը ունեցան երկու հարիւրի չափ աշակերտներ, իրենց ուսուցիչներով միասին։

Կիրակնօրեայ Դպրոցը արձակուրդ չունի։ Ջանացէք որ ձեր զաւակները երբեք բացակայ չի գտնուին դպրոցէն։

Դաշտագնացութիւն

Յունիս 30ին տեղի ունեցաւ Եկեղեցւոյս Դաշտահանդէսը Քինկզ գետեզերքը, ուր երկու հազարի չափ Հայեր կային: Առաւօտուն կատարուեցաւ եկեղեցական պաշտամունք և Հովիւը խօսեցաւ պատշաճ քաջալերական խօսքեր: Կէսօրէ վերջ ժամը երեքին ատենները մկրտեց 24 երախաներ: Օրը խիստ տաք էր. բայց ժողովուրդը հաճելի օր մը անցուց: Իրիկուան Հովիւը այցելեց նաև Արմօնայի Հայ աշխատաւորներուն:

Նշանուեցան

Յովհաննէս Շահգալէեան
Ռօզի Մարաշլեան

Ամուսնացան

Եղիշէ Գասպարեան, Զուարթուհի Մելիքեան, Լօս Անճէլըսէն: Կնքահայրութեան պաշտօնը կատարեց՝ Պ. Նազարէթ Ճուլիկեանի կողմանէ փոխանորդաբար՝ իր քեռորդին Կարապետ Թիմուրեան, Լօս Անճէլըսէն:

(Բ. Ամուսնութիւն)

Սեդրաք Բօթիկեան
Էլիզա Շահպազեան

Մահագրութիւն

Վահէ Կարապետեան
Խ. Անթոյեանի երախան՝ Տիրան
Գոհարիկ Նշկեան

Հիւանդներ

Գաւառական հիւանդանոցի մէջ

Անդրանիկ Յովսէփեան, Պետրոս Թաթոյեան, Մարտիրոս Աւետիսեան, Ալէքսան Ոսկանեան:

Պըրնէր Սէնիթէրիըմ

Զարմայր Շէհրիեան, որ լաւանալու վրայ է, և Տիկին Տ. Միսաքեան:

* * *

Մկրտուեցան

Ա. Անթոյեանի երախան՝ Տիրան
Ա. Անթոյեանի երախան՝ Քերոբ
Ս. Յովհաննէսեանի երախան՝ Զարդար
Ս. Յովհաննէսեանի երախան՝ Գաբրիէլ
Գ. Շարաֆեանի երախան՝ Սանդուխտ
Ս. Երմոյեանի երախան՝ Խաչատուր

Քինկզ Գետին եզերքը Մկրտուածներ

Ա. Մարգարեանի երախան՝ Էմէլիա
Խ. Պետրոսեանի երախան՝ Իսկուհի
Մ. Անդրանիկեանի երախան՝ Գարուն
Ե. Յովհաննէսեանի երախան՝ Յովհաննէս
Կ. Կարապետեանի երախան՝ Կարապետ
Թ. Թօփալեանի երախան՝ Նուարդ
Վ. Ծղնաւորեանի երախան՝ Զաւէն
Զ. Համամճեանի երախան՝ Վէրժին
Ա. Երէցեանի երախան՝ Գառնիկ
Ա. Երէցեանի երախան՝ Հրանոյշ
Պ. Միսաքեանի երախան՝ Մելքոն
Ա. Թէճիրեանի երախան՝ Յովակիմ
Զ. Քիւրքճեանի երախան՝ Եղուարդ
Ս. Ատանալեանի երախան՝ Շաւարշ
Ս, Սրապեանի երախան՝ Վահան
Պ. Հալլաճեանի երախան՝ Սահակ
Մ. Պալասանեանի երախան՝ Զարեհ
Պ. Մաթէոսեանի երախան՝ Մարգարիտ
Կ. Սրիմեանի երախան՝ Շուշանիկ
Պ. Քէլէչեանի երախան՝ Արտաշէս
Պ. Քէլէչեանի երախան՝ Արմէն
Վ. Կարապետեանի երախան՝ Վահան

---

—ՏՕՆԱՑՈՅՑ— —

ՅՈՒԼԻՍ — —

1. ԱԿ.—Տօն Սրբոց Կուսանացն Հռիփսիմեանց:

2. Գշ.— Տօն Սրբոց Կուսանացն Գայիանեանց:

6. Շբ.— ԴԶ. Տօն Սրբոցն Գրիգորի Լուսաւորչին մերոյ ելանելոյն ի վիրապէն:

7. Կիր. ԴԿ.— Բրդ զկնի Հոգեգալստեան Տօն Կաթուղիկէ Եկեղեցւոյ Սրբոյն Էջմիածնի:

13. Շբ. ԳԿ.— Տօն Սրբոյն Ներսէսի Մեծի Հայրապետին մերոյ և Խադայ Եպիսկոպոսին:

20. Շբ. ԳԶ.—Տօն Գիւտի Նշխարացն Սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ:



21. Կիր. Գ.Կ.— Դրդ զկնի Հոգեգալստեան:

23 Գշ. Դ.Կ. —Տօն Սրբոյն Դանիէլի Մարգարէին և Երից Մանկանցն:

Եշ. Ա.Կ. —Տօն Սրբոց Թարգմանչացն մերոց Իսահակայ և Մեսրոպայ:

27. Շբ. Բ.Կ.— Տօն Սրբոցն Տրդատայ Թագաւորին մերոյ, և Աշխէն Տիկնոջն խոսրովիդխտոյն

28. Յկիր. Գ.Զ.— Երդ զկնի Հոգեգալստեան: Գիւտ Տփոյ:

## ԿԵԱՆՔԸ ՍՈՒՂ ՉԷ

*Մեր ապրած միջավայրին մէջ կեանքը իր բոլոր խոստումներով կարծուածին չափ սուղ չէ դեռ, եթէ հրաժարիս նորաձևութենէ, հաճոյքէ և պերճանքէ: Այն ատեն պիտի համոզուիս որ առաջնոյն պատճառը վերջիններն են աւելի քան թէ պատերազմը և անոր յարակից պարագաները:*

## ԿԻՐԱԿՆՕՐԵԱՅ ԴՊՐՈՑԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

*Կիրակնօրեայ Դպրոցի աշակերտները ի՞նչպէս կրնան մէյմէկ զէնք նուիրել մեզի համար կռուող Հայ և Ամերիկեան զինուորներուն:*

*— Մէյմէկ Պատերազմական Խնայողութեան Թղթադրոշմի տետրակ գնելով:*



## ՔԱԼԻՖՕՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ

*Արևելեան նահանգներէն մեծ թուով Հայեր սկսած են Քալիֆօրնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լաւծ ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին: Մենք չենք գիտեր թէ որչափ չիտակ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ:*




ԷՋՄԻԱԾԻՆ

Կրօնա-Բարոյական Ամսաթերթ

Հրատարակութիւն՝

ՎԱՐԴԱՆ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏ ԳԱՍՊԱՐԵԱՆԻ

Բաժանորդագին՝ տարեկան մէկ տոլար

*Նամակ, ծրար ևն. ղրկուելու են վարի հասցէով: Բաժանորդագինը կանխիկ է:*

VOL I, NO. 7 JULY, 1918 PRICE 10 CENTS

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter